**1917** № 21—ՅՈՒՆԻՍԻ 4 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման ու կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.— Վտանգաւոր նշաններ, Ս. Յարութիւնեանի.— Ծայրից ծայրը, Լէօի.— Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան տարեկան ընդհ. ժողովը.— Հայ գիւղացութեան վիճակը (Շուշէթ · Իմիրխե).— Թիւրքահայ համագումարը, Ա. Շարաֆեանի.— ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— Թիւրքիա, Անգլիա և Ռուսաստան, Արշակ Սաֆրաստեանի.— ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.— Հայրենի գաւառ. բանաստեղծ. Ռուտ. Յովհաննիսեանի.— ԳԱՒԱՌ.— Նոր-Բայազիտ, Նշան Ցակոբեանի.— ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. ԸՆԿ., (Կենտրոնական Խորհուրդ, ճիւղեր, Հ.Կ. Կոմիտէ).— ՔՐՈՆԻԿՈՆ.— ՀԱՄԱՇԽ. ՊԱՏԵՐԱԶՄԸ.— ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ.—

## ՎՏԱՆԳԱՒՈՐ ՆՇԱՆՆԵՐ

*Ռուսաստանի դարաւոր բռնակալութեան տապալումից յետոյ նրա բազմացեղ ազգաբնակութիւնը ազատուեց իր իրաւազուրկ դրութիւնից և մտաւ կեանքի նոր շրջան, քաղաքական և հասարակական լայն իրաւունքներով։*

*Խորտակուեցին հին կարգերը, նրանց փլատակների վրայ կանգնեց նոր արև. իսկ այդ արևի ջերմութիւնից ծագեցին բազմաթիւ նոր պահանջներ։*

*Սակայն այդ պահանջները բաւարարութիւն չեն ըստանում առայժմ — ներկայ պայմաններում — չեն էլ կարող ստանալ։*

*Պատճառը պարզ է և հասկանալի։*

*Երկիրը պատերազմի մէջ է, նա շրջապատուած է արտաքին թշնամիներով. պետական կազմը թոյլ է, Ժամանակաւոր Բարձըր Կառավարութիւնը չունի հարկաւոր հեղինակութիւնը և զուրկ է ռէալ ոյժերից։*

*Եւ ահա թէ ինչու սկսուել է ներքին քայքայումն. անիշխանութիւնը բարձրացնում է իր գլուխը, նուաճուած ազատութիւններին սպառնում է կորստեան վտանգը։*

*Մինչև օրս հրճւում էինք, որ խորտակուեց հին ռէժիմը, որը անողորմ կերպով սեղմում, մեռցնում էր իր ծանր ձեռքով ազատ մտքի ամեն մի թռիչք, ամեն մի ձգտումն դէպի նոր իրաւակարգը։*

*Իսկ այժմ տիրում է մի ինչոր խորհրդաւոր անորոշութիւն ապագայի վերաբերմամբ. մենք հասել ենք մի կէտի, որտեղից նկատւում է կարգի կատարեալ բացակայութիւն՝ օրինական, հաստատուն, ամենքի կողմից յարգուած և ճանաչուած կարգի։*

*Հեռագրական տեղեկութիւնները օրէցօր փաստերով աւելի ու աւելի են հաստատում այս ողբալի իրականութիւնը։*

*Գիւղերում կատարւում են անպատիժ սպանութիւններ, կողոպուտներ և այլ տեսակ յանցանքներ ու բռնութիւններ։ Քաղաքներում համանման երևոյթները տեղի են ունենում ոչ պակաս չափով. և բացի այդ, քաղաքներում անընդհատ գործադուլներ են յայտարարւում, առաջ բերելով տնտեսական քայքայումն։*

*Երկրի զանազան մասերը, բացի Կովկասը, ուր համեմատաբար աւելի խաղաղ են պահում իրենց տեղական ժողովուրդները, յայտարարում են իրենց անկախ և բա-*

ցարձակ կերպով հրաժարւում են ճանաչել կենտրոնական բարձր կառավարութիւնը։

Զօրքի մէջ հիմնովին խախտուել է կարգապահութիւնը և պարտաճանաչութիւնը. զօրքի որոշ մասերը հրաժարւում են պատերազմել և պահանջում են կառավարութիւնից՝ կնքել թշնամու հետ հաշտութիւն ինչ գնով էլ լինի։ Պատերազմի դաշտից զինուորներն հատ-հատ, երբեմն խոշոր խմբերով վերադառնում են իրենց տները ազատ, արհամարհելով իրենց մերձաւոր իշխանութիւնը և ոչ մի արժէք չը տալով իրենց հրամանատարների պահանջներին։

Այս տեսակ փաստեր և օրինակներ բազմաթիւ են, մէկը միւսից աւելի տխրալի ու յուսահատեցուցիչ։

Ստեղծուել է անբնական և ծանր դրութիւն։

Տապալելով հին ատելի կարգերը, պետական հարցը չէ լուծւում, նրանց փոխարէն իսկոյն պէտք է ստեղծուեն նոր կարգեր՝ համակրելի, հիմնաւոր և ուժեղ։ Մի երկիր, մի պետութիւն չի կարող կառավարուել, չի կարող իր գոյութիւնն ապահոված համարել, չի կարող յուսալ լուսաւոր ապագայի, եթէ նա չունի մի կենտրոնական իշխանութիւն, որին հպատակուեն բոլորը, եթէ նա չունի հաստատուն կարգեր և ոյժ անպարտաճանաչերին հնազանդեցնելու։

Անբնական է, որ մի պետութեան մէջ միաժամանակ իշխեն, կառավարեն, տնօրինեն մի քանի ինքնուրոյն մարմիններ։

Պետրոգրադում գործում է Ժամանակաւոր Բարձր Կառավարութիւնը, նրա կողքին միաժամանակ ու ոչ պակաս, եթէ ոչ աւելի իրաւունքներով գործում են երկու կազմակերպութիւններ՝ զինուորական բանուորական պատգամաւորների խորհուրդները։ Ժամանակաւոր Բարձր Կառավարութիւնը գտնւում է այս խորհուրդների ազդեցութեան տակ, որովհետև ռէալ ոյժերը նրանց ձեռքումն են։

Իսկ գաւառներում բուսնում են ինքնագլուխ համանման խորհուրդներ ու ինքնակոչ իշխանութիւններ, որոնք երբեմն չեն ճանաչում ոչ Ժամանակաւոր Բարձր Կառավարութիւնը, ոչ էլ Պետրոգրադի կենտրոնական զինուորական-բանուորական խորհուրդները։ Մի խօսքով ստեղծուել է սոսկալի դրութիւն։

Ռուսաստանի վիճակը ծանր է թէ պատերազմական ճակատներում եւ թէ ներսը. պէտք է զգաստանալ և ըսթափուել։ Ամեն քաղաքացի, ամեն քաղաքական կազմակերպութիւն, որի համար թանգ է Ռուսաստանի ազատութիւնը, նրա լաւագոյն ապագան, պէտք է հաշիւ տայ իրեն, թէ ինչ կործանարար ճանապարհի վրայ է կանգնած երկիրը, թէ ինչ վտանգ է սպառնում պետութեան։

Ժամանակ է, որ արթնանայ և արտայայտուի ժողովրդի քաղաքական իմաստութիւնը երկիրը փոթորիկից ազատելու համար։

Այդ իմաստութիւնը պէտք է թելադրի հրամայողական կերպով՝ միաբանուել բոլոր գործող քաղաքական կազմակերպութիւններին ու աջակցել Ժամանակաւոր Բարձր Կառավարութեան. զօրքը պէտք է գէթ ժամանակաւորապէս հրաժարուի քաղաքականութեամբ պարապելուց և ներշընչուի մի մտքով — շարունակել ամենայն անձնուիրութեամբ պատերազմը մինչև պատուաւոր հաշտութիւնը։

Այս են պահանջում հայրենասիրութիւնը և քաղաքացիական պարտաճանաչութիւնը, այս է թելադրում և ազատութեան գաղափարը։

Հակառակ դէպքում սև ամպերի տակ կը մնեն Ռուսաստանի ազատութիւնը և նրա լուսաւոր ապագան։

Ս. Ցարութիւնեանց

# ԾԱՅՐԻՑ ԾԱՅՐ

Լինելով գերազանցօրէն կեդրոնախոյս մի ժողովուրդ, զարգացման ամենաբարձր աստիճանին հասցնելով — և այս, ի հարկէ, մեր ամբողջ պատմութեան երկաթէ անհրաժեշտութեան տակ — անհատականութիւնը, եսապաշտութիւնը, մենք ունինք մի չափազանց յեղյեղուկ, չափազանց անկայուն հաւաքական հոգեբանութիւն, որ և զրկում է մեզ կազմակերպչական լայն, շինարար նախաձեռնութիւնից և ստեղծագործական խոյանքներից ու դարձնում է մեզ—առենք պարզ—մի ամբոխ միայն, այնպիսի ամբոխ, որ, ըստ մեր հին Եղիշէի, «յամենայն հողմոյ շարժի և յամենայն բանէ խռովի և յամենայն իրաց դողայ»։

Այս կերպարանքով հայ ժողովուրդը ցուցադրւում է պատմութեան մէջ շատ ու շատ անգամ, համարեա միշտ։ Մենք նրան տեսնում ենք յանկարծական, անսպասելի տակնուվրայութիւնների ենթարկուած, մի ծայրից միւս ծայրին խփելիս, երերուն, տատանուող, հեւհեւ, անօգնական փութկոտութեամբ ելքեր որոնող։

Թող մի կողմ մնայ երկարատև անցեալը, խօսքը տանք հենց մեր օրերի փաստերին։ Յիշենք 1914-ի ամառը, երբ սկսուեց ներկայ պատերազմը։ Մի օրուայ մէջ մենք թռանք ոգևորութեան ամենաբարձր գագաթը, ցուցահանեցինք մի տենդային եռանդ, որ կարող էր շատերի նախանձը գրգռել և իրօք էլ գրգռեց հրէշաւոր չափերով։ Մտքով տեղափոխուենք մեր կամաւորական շարժման ամիսները։ Գինովցածի դրութիւնը միայն կարող է համեմատուել մեր այն ժամանակուայ հասարակական տրամադրութեան հետ։ Խօսքը, ի հարկէ, գաղափարի մասին չէ։ Մեր ցուցամոլութիւնն ու սնապարծութիւնն էին անհանդուրժելի չափեր ստանում։ «Տարտարէնի» անմահ հեղինակը որքան պիտի զարմանար իր հերոսացրած տիպի առատութեան վրայ, եթէ դուրս գար գերեզմանից և կանգնէր հայոց շարժման ճանապարհին, հիւսիսային բևեռին կրթնած Ալեքսանդրոպոլից մինչև Վանի ժպտուն լիճը։ Մի համեստ, շատ փոքր գործ էր մեր սկսածը։ Ի՞նչ նշանակութիւն

կարող էին ունենալ մեր մի 1000—2000 կամաւորները ժամանակակից պատերազմի մէջ, ուր տասնեակ, հարիւր հազարները չեն հաշուի առնւում։ Բայց մենք ուռցրինք, մեծացրինք, 200—250 մարդուց բաղկացած խումբը մեր լրագրութեան մէջ դարձաւ «բանակ»։ Փողոցային շահամոլները մի քանի հարիւր աւելորդ հինգ կոպէկնոցներ գզելու համար տպեցին մեր հերոսներից մէկի պատկերը, իսկ նրա ոտների տակ՝ օսմանեան դրօշակը ... Նուաճող ազգի հովեր էինք առել. մեզ էլ պատերազմող կողմ էինք համարում։ Գրգռեցինք մեզ անչափ, գրգռեցինք և մեր թշնամիներին ու կեղծաւոր բարեկամներին՝ դարձեալ անչափ։

Ու մեզ պատասխանեցին ... Հայաստանի մէջ սկսեց շարժուել թիւրքական եաթաղանը, ազգեր մորթող այդ անիծեալ երկաթը, գնաց բնաջինջ անելու ամբողջ հայութիւնը։ Նրան ընդառաջ էր գնում Կովկասի ծերուկ Մաքիավէլլին, կոմս Վորոնցով Դաշկովը։ 1915-ի ամառը թիւրքահայութեան վերջն էր բերել. սոսկալի գաղթը, արհեստական շարժում, դիակների լեռներ կուտեց իրար վրայ։ Մի կարճ միջոցում ամայի ու անմարդաբնակ էր մեր հայրենիքը։

Եւ ահա — ուրիշ ծայր մեր տրամադրութեան մէջ։ Վհատութեան անդունդը գլորուած, լալկան, խեղճ, դարձեալ պոռի, բռնութեան յօշոտած նահատակի դիրք ու խօսք — Թիֆլիսի առաջնորդարանում հաւաքուած, գլխակոր փսփսացող մի բուռն գործիչների մէջ Կովկասի Մաքիավէլլիի գործիքներից մէկը, յուսահատ ու մոլորուած, արտասւում էր. «Մեզ խաբեցին,— տըղայամիտ էինք»։— Պատասխանատուներ էինք որոնում, անհատներ անպատճառ, այն էլ մեր միջից։ Կուզէինք մէկին խեղդել, գետը գցել, հարկադրել որ նրանք եպոնական «խարիկարի» կատարեն իրենց վրայ։ Կարծում էինք թէ այդպիսով պատժուած կը լինէր համատարած ոգևորութիւնը, ազգային գինովութիւնը։

Եւ դարձանք այնուհետև առաւելապէս որբախնամներ։ Մոռացանք գրեթէ ամեն ինչ՝ մահուան ճանկերից գաղթականներ ազատելու համար։ Թանգատուր ու պահանջկոտ էինք իբրև որբատէրեր և ամեն տեղ — մամուլի մէջ, խօսքի, մտածողութեան բոլոր հանդիսարաններում մենք մեր ազգի դժբախտութիւններով էինք ապրում, մեր ազգային իրաւունքներն էինք վեր հանում։ Նոյն իսկ Վարդանանց տօնին խանութներ բացելու կամ գոցելու հարցը մենք դարձրինք ազգային արժանապատուութեան դատ։

Աշխատում էինք այսպէս, հեւիհև, եւ ողբալով, եւ գանգատուելով։ Եկաւ ռուսական յեղափոխութիւնը։ Եւ ահա մի նոր տեսարան։ Մի օրուայ մէջ մոռացուել է ամեն ինչ։ Կարծես մի գիշերուայ մէջ վերացել է մեր արիւնոտ հարցը, կարծես մենք այլևս Վանի լճի և Եփրատի ամայացած աւազաններ չունենք, կարծես կուշտ ապրելու, անթաց աչքերով ապրելու կարմիր ու տաքուկ օրեր են բացուել հարիւր հազարաւոր որբերի, այրիների, լլկուած կոյսերի համար, որոնք իրանց գերմարդկային թըշուառութիւններով ծածկել են ամբողջ հողը Դամասկոսից մինչև Միջին Ասիա։

Ու մի օրուայ մէջ, ազատութեան ռամկավար թևերի վրայ գալիս էր մեզ համար նոր, մեծ յայտնութիւն։ Մենք նոր միայն գտնում էինք որ հայն իսկապէս հայ չէ, այլ մի ուրիշ բան, այն է՝ արևմտահայ և արևելահայ։ Հանդէս եկաւ որ աշխարհագրական դիրքերից չեն առաջացել այս յորջորջումները։ Ո՛չ։ Նրանք ներկայացնում են տարբեր շահեր, տարբեր մարդկային դրութիւններ, գուցէ նոյնիսկ և տարբեր մարդաբանական տեսակներ։

Այսօր մենք, ողորմութեամբն Աստծու, ապրում ենք այս նոր իրականութեան մէջ։ Արևմտահայ և արևելահայ հակոտնեաները իրար դէմ են կանգնել, իրար մեղադրում են, իրարից օձիք ազատել են ուզում։ Արևմտահայը, միշտ ճնշուած, միշտ զոհ, դանգատւում է թէ արևելահայի ստրուկն է եղել ինքը միշտ։ Արևելահայն էլ ինչ-որ ուրիշ, աւելի սարսափելի բաներ է ասում իր հակոտնեային։ Եւ բաժանումը կատարւում է, խօսելով ներկայի պատերազմական բարբառով, ամբողջ գծի վրայ։ Առանձնութիւն ամեն պարագայի մէջ.— այնտեղ, ուր պէտք է թիւրքական և քիւրդական գերութիւնից զոհեր ազատել, այնտեղ, ուր գաղթականներ են խնամւում, այնտեղ, ուր խօսքը գրքին ու գրականութեանն է վերաբերում։

Բաժանւում է, ի հարկէ, և այն մեծ դատը, որ մի ժամանակ, նախայեղափոխական «բարի» և միամիտ դարաշրջանում, նախ քան արևմտահայ և արևելահայ անտրոպոլոգիական հակոտնեաների մեծ դատը, կոչւում էր «հայոց հարց» և պատկանում էր Թորգոմածին Հայկի բոլոր զաւակներին։ Այժմ արևելահայ կուսակցութիւնների դաւանանքն է դառնում, որ հայոց հարցը արևմտահայերի կամ թիւրքահայերի գործն է և պիտի լուծուի ինչպէս նրանք են ցանկանում։

Այս է ահա տեղի ունենում հայութեան մէջ, և այս՝ այնպիսի մի ժամանակ, երբ աշխարհի բոլոր ազգերը աւելի կուռ ազգային միութիւններ են կազմում, ձուլելով նրանց մէջ նոյն իսկ անհաշտ տարրերը։ Այս է կատարւում հայութեան մէջ այնպիսի մի ժամանակ, երբ նրա արիւնարբու թշնամի ժէօն թիւրքերը մտածում են կրօնի միջոցով ազգային մի միաձոյլ կազմակերպութիւն ստեղծել Աֆրիկայի տափակաքիթ խափշիկից և դեղնամորթ չինացուց, մի յաղթական, տիրապետող Թիւրքիա կանգնեցնելու համար։

Ի՞նչ նորութիւն պիտի բերէ այս նոր ծայրը, այս մեծ հերձուածը հայութեան։ Կը տեսնենք հետևեալ անգամ։

ԼԵՕ

## ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿ. ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

Մայիսի 28-ին Կ. Հ. Բ. Ընկերութեան ընթերցարանի դահլիճում կայացաւ նոյն Ընկերութեան ընդհ. ժողովը։

Նախքան ժողովը հոգեհանգիստ կատարուեց Ընկերութեան բարերար հանգուցեալ Վ. Ա. Դուլթեանի յիշատակին։

Ապա Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան բանալով նիստը՝ առաջարկեց ընտրել ընդհանուր ժողովի նախագահ։ Ժողովականներն առաջարկեցին բժշկապետ Բ. Նաւասարդեանին, որը վճռապէս հրաժարուեց և նախագահ ընտրուեց պ. Հ. Առաքելեան, իսկ քարտուղարը՝ Յ. Մալխասեան։

Ընտրութիւնից յետոյ ժողովը յոտնկայս յարգեց հանգուցեալ բարերար Վ. Ա. Դուլթեան՝ի և բանաստեղծ Ա. Ծատուրեանի յիշատակը։

Խորհրդի անդամ պ. Իս. Յարութիւնեան համառօտ զեկուցում տուեց Խորհրդի 1916-ի գործունէութեան։

Զեկուցանողն յայտնեց որ տպագրութեան ծանր պայմանների պատճառով՝ Խորհուրդն անկարող եղաւ նախորդ տարիների նման իր գործունէութեան տեղեկագիրը հրատարակել, այլ առայժմ տպել է համառօտ հաշիւը և խոստանում է յետոյ հրատարակել տեղեկագիրը։

Զեկուցանողը յայտնեց նաև, որ Խորհրդին կից գործում են մի շարք յանձնաժողովներ, որոնց անունները թուեց։

Ընկերութիւնը 1916—17 ուսումնական տարեշրջանում ունեցել է 135 դպրոց, որոնց նպաստ տուել է 39297 ռ. 50 կ.։

Այդ դպրոցներում սովորել են 7313 աշակերտ-աշակերտուհիներ, դասաւանդել են 184 ուսուցիչ։ Ճաշարանում ձրի ճաշել են 64 աշակերտ, էժան վճարով 96 աշակերտ, ընդամենը 160 անձ։ Խուդադեան ապաստարանը Խորհրդի կողմից որոշուել է փակել և նրա վրայ ծախսուելիք գումարը գործածել յօգուտ դպրոցական գործի։ Գրադարան-ընթերցարանը համեմատաբար աւելի ընթերցողներ է ունեցել։ Ընկերութեան տրամադրութեան տակ կան երկու շարժուն գրադարաններ՝ Անահիտեան և Շիրինեան, որոնցից մանկական և այլ գրքեր են ուղարկում գաւառական գրադարաններին։ Պօղոսեան ֆոնդը հրատարակչական գործի համար ստեղծուած, չէ ծառայել իր նպատակին տպագրական գործի դժուարութեան պատճառով։ Ֆոնդի տոկոսները աւելացել են մայր գումարի վրայ, որը տուել է մօտ 10000 ռ.։

Կրթական գործի մասին պ. Իս. Յարութիւնեան յայտնեց որ պատերազմի և հետզհետէ աճող թանգութեան պատճառով այլևս չի կարելի միևնոյն ռոճիկով և պայմաններով ուսուցիչ վարձել, այնպէս որ Ընկերութեան դպրոցներից շատերը առաջիկայ ուսումնական տարում ենթակայ են փակման, եթէ հայ հասարակութեան ունևոր և գիտակից դասակարգը օգնութեան չը հասնի այդ նպատակի համար. կարելի է աւելացնել ուսուցիչների ռոճիկները և դպրոցներն ազատել փակման վտանգից։ Հարկաւոր քանակութեամբ ուսուցիչներ ունենալու համար ցանկութիւն յայտնեց բանալ մի ուսուցչանոց, ուր մեր միջնակարգ դպրոցները վերջացնող աշակերտները կարողանան վարժուել և պատրաստուել յատկապէս ուսուցչութեան գործին։

Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան խօսելով կրթական գործի մասին և շեշտելով նրա կարևորութիւնը հայ ժողովրդի համար, մի քանի բարերարների անուններ տուեց, որոնք խոշոր նպաստներ են տուել այդ նպատակով։ Խոշոր նուիրատուներից են Պետրոգրադում ապրող Արշակ Ունանեանը, որ յանձն է առել դպրոցական գործին տալ տարեկան 12,000 ռ., Տ. Աֆրիկեանը, որ միանուագ տուել է 7,550 ռ. և Գ. Տէր-Պետրոսեանը, որ տուել է 3,080 ռ.։ Պ. Ս. Յարութիւնեանի առաջարկութեամբ ժողովը միահամուռ շնորհակալութիւն է յայտնում յիշեալ բարերարներին և որոշում հեռագրով շնորհակալութիւն յայտնել նաև Ա. Ունանեանին։

Վերստուգիչ յանձնաժողովը զեկուցում տուեց Ընկերութեան 1916 թուի հաշիւների մասին և յայտնեց, որ հաշիւները կազմուած ու արձանագրուած են ճշտօրէն։ 1916 թ. ընթացքում Ընկ. կենտրոնը թէ նուէրներից, թէ դրամագլխի տոկոսներից և թէ անդամավճարներից եկամուտ է ունեցել ընդամենը 70,360 ռ., իսկ ծախք ունեցել է 76,195 ռ., որով դեֆիցիտ է եղել 5,835 ռ.։ Դեֆիցիտը առաջացել է գլխաւորապէս ճաշարանից (որ ունեցել է մուտք 7,727 ռ., իսկ ծախք 12,585 ռ.) և դպրոցական գործից, որի մուտքն եղել է 26,738 ռ., ծախսը՝ 28,886 ռ.։ Բացի սովորական մուտքից, եղել է յատուկ գումարների մուտք 111,481 ռ., որից 59,562 ռ. ստացուել է յօգուտ փախստականների, 2,321 ռ. յօգուտ հայ գերիների փրկութեան եայլն։ Ծախքը եղել է ընդամենը 53,749 ռ., իսկ մնացածը, ինչպէս նաև հայ փախստականների օգտին ստացուած 56,692 ռ., պ. Ս. Յարութիւնեանի բացատրութեան համաձայն պատրաստ պահւում է Ընկերութեան գանձարանում՝ Հ. Կ. Կոմիտէի ծախսերի և կարիքների համար անհրաժեշտ պարագային ծախսելու։

Այնուհետև պ. Ս. Յարութիւնեանը զեկուցում տուեց Հ. Կ. Կոմիտէի գործունէութեան մասին։

(Շարունակելի)

# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԸ

## (ՇԱՒՇԷԹ — ԻՄԻՐԽԵՒ)

Շաւշէթ-Իմիրխևը, Տաճկահայաստանի սահմանակից մի փոքրիկ գաւառ է, որ ձգւում է Արդուինի և Արդահանի միջև։

Այդ գաւառի չորս հայաբնակ գիւղերն ներկայացնում են մի անմխիթար վիճակ։ Այդ գիւղերից Օքրոպակերտը, նախքան պատերազմն ունէր 225 տուն, իսկ 1914-ին երբ թիւրքական վոհմակները ներս խուժեցին Կովկաս, ենթարկուեց աւերումի և այժմ հազիւ 135 տուն բնակիչ ունի։ Կոտորածի ժամանակ 40 տղամարդ զոհ է տուել յիշեալ գիւղն, որ միւս գիւղերի հետ համեմատած աւելի նուազ է։ 1916-ին մի մեծ հրդեհ պատահեց այնտեղ, որն ոչնչացրեց տներից և այլ շինութիւններից մեծագոյն մասը. 159 տուն մի անգամից հրդեհեցին և երկու կանայք ողջ ողջ այրուեցին։ Պատերազմի և հրդեհի պատճառած աւերից յետոյ, այժմ Օքրոպակերտը ներկայացնում է մի վերին աստիճանի խղճալի վիճակ։ Բնակչութեան մեծ մասը մերկ է, անօթի և սրա նրա ողորմութեան կարօտ։

Օքրոպակերտը գտնւում է մի ջրառատ և արգասաբեր վայրում, ուր կարելի է լաւ բերք և արմտիք ստանալ։ Բայց ժողովրդի տնտեսութիւնն ու նիւթական վիճակը այնքան խանգարուած է, որ նա ի վիճակի չէ օգտուելու երկրի հարստութիւնից։ Պատերազմից առաջ այս գիւղն եղած է հարուստ և շրջակայ 14-15 թրքական գիւղերին հայթայթած է ամեն տեսակ առևտրանիւթ։ Որպէսզի գիւղը այժմեայ իր աննախանձելի և խղճալի դրութիւնից ազատուի, պէտք է ուշադրութիւն դարձնել և ազատել նրան քայքայման ճիրաններից։

Շաւշէթ-Իմիրխևի երկրորդ գիւղը *Մամանալիսն* է, որ խառն բնակչութիւն ունի, 150 տուն թուրք և 21 տուն հայ։

Այժմ՝ թիւրքերի արշաւանքից յետոյ հազիւ միայն երկու տուն հայ է մնացել. հայերը տուած են 12 զոհ, իսկ մնացածը փախել են զանազան կողմեր. Մնացող 2 տուն հայ բնակչութիւնը գտնւում է նիւթապէս չքաւոր վիճակում։

Երրորդ գիւղը *Սաղլ-էլ-թաթարն* է, որ նախ քան պատերազմն ունէր 105 տուն, իսկ այժմ 68 տուն հայ բնակչութիւն։ Օքրոպակերտ, Բխիկօտ և Մամանելիս գիւղերից այս գիւղը գաղթած են 13 գաղթական ընտանիք։ Կոտորածն այստեղ սարսափելի եղած է. 137 այր և 3 կին զոհ են գնացել թիւրքական ոճրագործ եաթաղանին, դիպուածով միայն 8—10 ծերունի գիւղացիք կարողացել են ազատուել։ Գիւղում երիտասարդի հետքն անգամ չկայ. կոտորածի ժամանակ կանայք ստիպուած են եղել փորելու գերեզմանները և իրենց սիրելիները թաղելու....։

Ամբողջ գիւղը կողոպտուած է անխնայ կերպով։ Երբեմնի հարուստ և փարթամ Սաղլէլը կործանուած է այսօր։ Մեծ ու շքեղ տներից դուրս են գալիս պատառուած ու աղքատ կանայք իրենց կիսամերկ երախաների հետ. Նրանք սակաւին գտնւում են կիսախելագար և ցնցուած վիճակում և ոչ մի տեղից օգնութեան ձեռքը դեռևս չի եկել սփոփելու և տաքացնելու նրանց ընկճուած հոգիները։

Չորրորդ գիւղը *Բխիկոտն* է, որ գտնւում է Իմերխևի վերախօս շրջանի և համանուն գետի ափին։ Նախքան պատերազմն ունէր 27 տուն հայ բնակչութիւն, այժմ այդ թիւն իջել է 23-ի։

Գիւղի դիրքն ու տեսարանը հրաշալի է, բայց գիւղացոց վարելահողը խիստ սակաւ։ Բարեբաղդաբար գիւղում կոտորած չէ եղած, բայց ազատ չէ եղած կողոպուտից։ Գիւղի շրջակայքը

*բնակեցուած են մահմեդականներով. հայ գիւղացիների և նրանց յարաբերութիւնը այնքան էլ մխիթարական չէ։*

*Գիւղացիք պարապում են այգեգործութեամբ։ Այժմ խիստ խղճուկ վիճակի մէջ են գտնւում և կարօտ օժանդակութեան։*

*Ահա այս անմխիթար ու սարսափելի վիճակն է ներկայացնում Շամշէթ-Իմիրխև գաւառի հայ գիւղացութիւնը։*

*Հարկաւոր է շուտափոյթ և անմիջական օգնութիւն։*

*Իսկ թէ քաղաքի փոքր կուշտ և խելքը-շատ բնակչութիւնն երբ պիտի ազատուի «ճոճուան» ֆրազներից և օդակառոյց դըրդեակներից և օգնութեան փութայ գաւառի տանջուող ժողովրդին՝ այդ Աստուած գիտէ...։*

# ԹԻՒՐՔԱՀԱՅ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ *)

VI.— *Վերաշինութեան յանձնաժողովի զեկուցումից յետոյ ընդունուեց հետևեալը.*

1.— *Փախստականներին ուղարկել միայն ապահով վայրերը. անապահով վայրեր գնացողներին չխրախուսել և չնպաստել. գրաւուած վայրերի կարևոր կենտրոններում վերակազմել ազգային ինքնավար մարմիններ, առաջնութիւն տալ վերադարձողներից նախ լծկան ունեցողներին տնտեսութիւնը վերականգնելու համար. որոշ գաւառների ժողովրդին տալ հնարաւորութիւն պարապելու անասնապահութեամբ. արհեստաւորներին հայթայթել գործիքներ և հնարաւորութիւն տալ արհեստանոցներ բանալու. պարենաւորման խանութների ցանցը ընդարձակել. Կովկասում ապաստանածներին օգնել եզներով, գործիքներով, բանալ աշխատանքի բիւրօ. արհեստանոցները ուժեղացնել. զարկ տալ կանանց աշխատանքներին։ Կազմել կրթական-արհեստագիտական ֆոնդ՝ տեխնիկական կրթութիւն տալու համար։ Այժմեանից աշխատել վերաշինել ապահով վայրերը. կազմել ազգային ֆոնդ։ Բանալ կօօպերացիաներ և մանր վարկի հիմնարկութիւններ. կազմել խորհրդին կից մի մարմին՝ վերաշինութեան համար։*

VII.— *Գեղարուեստական յանձնաժողովը առաջարկեց հաւաքել հնութիւնները, հաւաքածները առժամանակ տեղաւորել Էջմիածնում և մտածել համազգային թանգարանի մասին։*

VIII.— *Թիւրքահայ մարմինների վերաբերեալ զեկուցումից պարզուեց, որ կազմակերպուել են հայրենակցական և ուսուցչական միութիւններ, որոնց թիւը հասնում է 62-ի 13770 անդամով։*

IX.— *Ռուսահայ ազգային փախստականական մարմինների գործունէութեան վերաբերեալ ընդունուեց հետևեալ բանաձևը.*

1.— *Թիւրքահայ համագումարը լսելով պատգամաւորներու զեկուցումները փախստականական ազգային մարմինների օգնութեան գործի կազմակերպման և վիճակի մասին, կը նկատէ որ փախստականներու օգնութեան գործը վարող ազգային բազմաթիւ մարմիններու գործունէութեան մէջ— չնայած անոնց նըպատակներու և միջոցներու բացարձակ համանմանութեան, չէ եղած մէկ ընդհանուր ուղղագիծ և գործելակերպ, ինչպէս նաև միջոցներու ու գործերու կեդրոնացում և ներդաշնակութիւն.*

2.— *Որ օգնութեան գործի մէջ տեղի են ունեցել խոշոր թերութիւններ, ինչպէս անմեթոդ գործելակերպը, իրաւական կոնտրոլի բացակայութիւնը, պաշտօնէական կազմի անփոյթ ընտրութիւնն ու փախստականներու նուազ մասնակցութիւնը, կանոնաւոր հաշուետուութեան բացակայութիւնը, որոնք առիթ տուած են բազմաթիւ բողոքներու և կասկածներու։*

*) *Տես «Համբաւաբեր» № 20։*

3.— *Որ փախստականներու օգնութեան գործը ընդհանուր առմամբ նկատուած է իբր սոսկ մարդասիրական ձեռնարկ և տարուած է ըստ այնմ ղեկավարուելով գլխաւորապէս նպաստ տալու սկզբունքով, փոխանակ աշխատանք տալու. մինչդեռ հալածական թիւրքահայութեան գոյութեան պահպանման գործը պիտի նկատուէր գերազանցապէս իբրև ազգային-հասարակական նշանակութիւն ունեցող գործ։ Միւս կողմէ, սակայն բոլոր յիշեալ թերութիւններով հանդերձ, թիւրքահայ համագումարը փախըստականական կազմակերպութիւններու գոյութիւնը օգտակար կը համարէ հետևեալ նպատակներով՝ ա) որ անոնք ցարդ ձեռք բերած են այդ գործին անհրաժեշտ փորձառութիւն, հաստատած են կապեր և ծանօթ են ռուսական միջավայրին և պայմաններուն. բ) որ արդէն ստեղծած և ընթացք տուած են որոշ հիմնարկութիւններու. գ) որ փախստականներու գոյութիւնը պահելու գործը համագումարն կը նկատէ իբրև համազգային գործ, հետևաբար անոր օգնութիւնը պիտի կատարուի հայութեան բոլոր հատուածներու կողմէ հաւասարապէս և դ) թիւրքահայութիւնը այս վիճակին մէջ շատ տեսակէտներով հնարաւոր և ցանկալի չի համարիր միայնակ վարելու իր օգնութեան գործը, առանց փախըստականական մարմիններու գործակցութեան։*

*Սոյն բանաձևից յետոյ առաջարկուեց՝ 1) հիմնական վերաքննութեան ենթարկել ամբողջ գործը, ընդարձակ տեղ տալ թիւրքահայերին. 2) մտցնել հաշուետուութեան սկզբունք. 3) վերահսկողութեան ենթարկել գործիչներին և ստեղծել կեդրոնացում. 4) պարենաւորման և նպաստի գործը յանձնել միևնոյն մարմնին. 5) աշխատանքի միջոցներ, աշխատաւորական արտելներ ստեղծել, սերմացու և անասուն բաժանել փախստականներին. ի նկատի ունենալով որ բանաձևը կրում է ընդհանուր բնոյթ և վերաբերում է բոլոր ազգային փախստականական հիմնարկութիւններին, հետևապէս Հ. Կ. Կոմիտէին ու Բարեգործական Ընկերութեան և գտնելով որ բանաձևը չի համապատասխանում իրականութեան, որ նախ՝ եղել է իրաւական վերահսկողութիւն և կայ նաև այսօր. երկրորդ.— պաշտօնէութիւնը կազմել ոչ թէ պատահաբար, այլ որոշ երաշխաւորութեամբ, պահանջներով ու տուեալներով, ինչ որ չի հաստատում այն կարծիքն, որ ինչպէս միւսների նոյնպէս և մեր հիմնարկութիւններում կարող էին տեղ գտնել որոշ թուով անհամապատասխան անձնաւորութիւններ. երրորդ.— եղել է ու ներկայացուել է հենց համագումարին ըստամենայնի կանոնաւոր հաշիւ քարտէզներով և վիճակագրութեամբ հանդերձ, որի առիթով համագումարից չի լսուել և ոչ մի խօսք. չորրորդ.— որ փախստականական գործը նկատուած է իբրև ազգային հասարակական գործ. հինգերորդ.— եղել է նաև իրենց՝ փախստականների իրաւական մասնակցութիւն։*

*Համագումարի վերջում ընտրուեց փախստականական գործով զբաղուող բոլոր մարմինների ու անհատների վերաբերեալ հետևեալ բանաձևը.*

*«Թիւրքահայ համագումարը լսելով պատգամաւորներու զեկուցումները խորապէս կը գնահատէ այն ջերմ ու մարդասէր վերաբերմունքը և սիրալիր ու լիակատար օժանդակութիւնը, որ ցոյց տուին հասարակութիւնները, մարմինները և անձերը հանդէպ հալածուած և տարագիր թիւրքահայ ժողովրդին, կարտայայտէ իր խորին երախտագիտութիւնը՝ ա.) ռուս մեծ ժողովրդին և հասարակական մեծ խաւերուն. բ.) անգլիական, ամերիկական, ֆրանսական և այն բոլոր ժողովուրդներուն, մարմիններուն և անձերուն, որոնք ջերմ մասնակցութիւն ունեցան թէ հեռուէն և թէ բուն իսկ վայրին վրայ, թիւրքահայ ժողովրդի ցաւերու ամոքման մէջ և մօտէն բաժանեցին անոր ծանր վիշտը.*

գ.) Թիւրքահայ համագումարը պարտք կը համարէ իր ջերմ երախտիքը յայտնել ամէն կողմ ցրուած հայութեան, ռուսահայ եղբայրներուն և մասնաւորապէս ցաւակից գիւղացութեան։ Շընորհակալութեան խօսք կանէ նաև այն անձնուէր անհատներուն և ընկերութիւններուն, որոնք առաւել կամ նուազ չափով կը նըպաստեն փախստականներու օժանդակութեան գործին»։

Ամենից վերջը համագումարը անցաւ խորհրդի ընտրութեան։

Ընտրուեց 25 հոգուց բաղկացած մի կենտրոնական խորհուրդ, որի 15 անդամները միանալով հաւասար թւով ռուսահայ ներկայացուցիչներին՝ կազմում են մի կենտրոնական մարմին փախստականներու գործերը վարելու համար։

Ա. Շարաֆեան

# Արտաքին տեսութիւն

## ԹԻՒՐՔԻԱ, ԱՆԳԼԻԱ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆ

Եւրոպայի հիւանդ մարդը այլևս դետեղուած է վերջին վիրաբուժական գործողութեան սեղանին վրայ։ Երկու դարից ի վեր նախատեսուած եւ երազուած ցանկութիւնը այժմ մօտենում է իրականութեան։ Ցարդ կատարուած անդամահատումը յանգել էր Սերբիայի, Յունաստանի և Բուլգարիայի վերածնութեան։ Ներկայ պատերազմը յանգելու է Հայաստանի վերածնութեան։ Երևակայութիւնից զուրկ աշխարհը անկարող է ականատես լինել աւելի մեծաշուքինդ անակնկալների։

Նկատի ունենալով կատարուած բոլոր խողութիւններն ու ռազմական գործողութիւնների ընթացքը, թւում է թէ ներկայ պատերազմը է չարս այլ ազգութիւնների, վերապահուած է և յարուցանելու Արաբական ազգութիւնը։ Թիւրք պետութիւնը 1914-ի յուլիսից ի վեր իր ինքնապաշտպանական արարքներով ոչ նուազ նպաստել է իր սեփական անդամահատման։ Նոյն տարուան սեպտեմբերին երիտ. Թուրք կառավարութիւնը միակողմանիօրէն և առանց սպասելու դաշնակից պետութիւնների հաւանութեան՝ ջնջուած հռչակեց կապիտուլասիոնները, որոնք Թիւրքիայում ունէին սովորական և պայմանադրական օրէնքի ոյժ։ Հայերի վերաբերմամբ նրանց ցոյց տուած եղեռնական դաւաճանութիւնը յաւերժապէս արտաքսում է Թիւրքը Հայաստանից։ Արաբիոյ քըրիստոնեայ և որոշ չափով իսլամ բնակչութեան հանդէպ նրանց որդեգրած քաղաքականութիւնը կորցնել է տալիս այդ աշխարհամասի վրայ Թիւրքական վեհապետութիւնը։ Բունիսկ իրենք Թիւրքեր իրենց կայսրութեան վերջնական քայքայման coup de grâce տուին՝ մի քանի ամիս չեղեալ հռչակելով Բարիզի (1856) և Պերլինի (1878) միջազգային դաշնագիրը, հենց այն վաւերգրերը, որոնք վերջին 60 տարուան մէջ գէթ իրաւապէս պայմանաւորում էին Թիւրքիոյ քաղաքական անկախութիւնը և հողային ամբողջութիւնը, — մի ֆիկցիա որ գէթ Թիւրքիային իրաւունք էր տալիս մասնակցելու եւրոպական համերգին։

Այժմ ինչ է եղել գործնական հետևանքը Թիւրքիայի այդ ուժեղ «ազատագրական» քաղաքականութեան։

Պատերազմի ներկայ փուլին՝ դժուար է նախատեսել բոլոր հնարաւորութիւնները, բայց և այնպէս կան որոշ կատարուած եղելութիւններ։

Ա.— Անգլիոյ աջակցութեամբ Մէկկայի Շէրիֆը անցեալ յուլիսին հռչակեց Արաբիոյ անկախութիւնը Թուրքական լուծից, և ինքնիրեն հռչակեց Հիճազի և Մէկկայի սուլթան, մի անկախ վեհապետ, որի քաղաքական նոր status-ն արդէն պաշտօնապէս ճանաչել են Անգլիան, Ֆրանսիան և Իտալիան։

Բ.— Դաշնակից պետութիւնները անցեալ յունուարին նախագահ Ուիլսընին տուած պատասխանով վճռապէս յայտարարում են Թիւրքերի արտաքսումը Պոլսից և հայերի ու սիրիացիների ազատութիւնը։

Գ.— Միջագետքի Անգլ. բանակը գեն. Սթանլէյ Մօդի ղեկավարութեամբ մի քանի օր առաջ գրաւեց Բաղդադ, Հազար եւ մէկ գիշերների պատմական մայրաքաղաքը։ Այսօր բրիտանական կառավարութիւնը Բաղդադի ժողովուրդին եւ Արաբ աշխարհին ուղղուած մի կոչով հիմք է դնում Արաբական ազգութեան. դա միաժամանակ դնում է և հիմնաքարը Արևելեան նոր քաղաքականութեան, զոր Մեծն Բրիտանիա յոյս ունի վերականգնել հին աւերակների վրայ։ Յաճախակի վրիպումներով և զարհուրելի խայտառակութիւններով լիք այդ հարիւրամեայ քաղաքականութեան սկզբունքն էր պահպանել Օսմ. կայսրութիւնը իբրև մի բարեկամական պատուար Անգլիական արևելեան կայսրութեան. — «դա հիմնուած լինելով Ռուսաստանի հանդէպ անվստահութեան վրայ, Անգլօ-Ռուսական բարեկամութեան թուականից ի վեր (1907) արդէն կորցրել է իր հին արժէքը» ասում է Manchester Guardian իր խմբագրականով։ «Իսկ Թիւրքերի Գերմանիոյ դաշնակցիլը այդ հին քաղաքականութեան տուեց մահացու հարուած. 1915 ի հայկական կոտորածները վերջնապէս ապացուցին Թիւրքերի անբուժելի անյարմարութիւնը կառավարելու օտար ժողովուրդներ և հիմնապէս ջնջեցին Թիւրքերի հետ ունէ կոմպրոմիսի հնարաւորութիւնը, և մեր քաղաքական առաջին պարտաւորութիւններից մէկը դարձրին հիմքերից վերակազմել մեր Արևելեան հին քաղաքականութիւնը» . . . . .

Երկար վարանումներից յետոյ, Անգլիացիք վերջապէս վըճռեցին Միջագետքում ձեռնարկել մի ուժեղ յարձակողականի, զուգէ իբրև նախաբան իրենց ծրագրած Արևելեան նոր քաղաքականութեան։ Այժմ նրանք գրաւել են Բաղդադը, որ մի սերունդից ի վեր եղել էր երազը համագերմանութեան նուաղագոյն ծրագրին — երկաթուղի Բերլինից մինչև Բաղդադ և դրա միջոցով Գերմանիոյ քաղաքական և տնտեսական գերակշռութեան ծաւալումը Թիւրքիայում և ամբողջ Արևելքում։ Անգլիական մամուլը իր սովորական վերապահութեամբ հռչակում է որ Մեծն Բրիտանիա Միջագետքի յաղթութեամբ հողային ինքնասիրութեան նոր նուաճումներ չի որոնում. ինչպէս զօրավար Մօդ ասում է իր յայտարարութեամբ, նա հրաւիրում է Բաղդադի ժողովուրդը՝ ուղարկել ներկայացուցիչներ խորհրդակցելու Անգլ. քաղաքական պատգամաւորների հետ՝ գրաւուած նահանգի քաղաքացիական գործերի կառավարչութեան մասնակցելու. Նա հրաւիրում է Արաբներին միանալ հիւսիսի, հարաւի և արևելքի իրենց եղբայրների հետ՝ իրագործելու իրենց ցեղի պատմական բաղձանքները։ Նրանք հրաւիրւում են Անգլիոյ օգնութեամբ վերականգնել իրենց հին փառքը, ցեղային միութիւնը և ազգային բարգաւաճումը, և բաժանուել Թիւրքերից, որոնք հալածել են և կործանել նրանց քաղաքակրթութիւնը։

Առայժմ ոչ ոք չի խօսում կամ գրում Արաբ ազգութեան ազգագրական և աշխարհագրական սահմանների մասին, որովհետև արաբները տարածւում են Հնդկական ովկիանոսից մինչև

(1) Ծանօթ.— Վերոյիշեալ անպատիւ խոստովանութիւնը, որ բղխում է մի համակրող և լուրջ թերթի խմբագրականից, հոս վերջերս յաճախ կրկնուել է անզգամաբար։ Անգլիա ականատես լինելէ յետոյ մի ամբողջ ժողովուրդի նահատակութեան, այժմ միայն բարեհաճում է վերակազմել իր Արևելեան քաղաքականութիւնը։ Դեռ ասելիք կայ այդ մասին։

Ա. Ս.

Մարոք և Կեդր. Ափրիկէ. որչափ ծանօթ է ինձ, բացի մի Թերթից, ոչ ոք չի արտայայտել Արաբիոյ Նոր Իրաւակարգի՝ Թիւրքիոյ ազգային միւս միաւորների և նահանգների վրայ ունենալիք հակազդեցութեան և փոխ-յարաբերութիւնների մասին։ Սակայն «The near Vast» շաբաթաթերթը «Նոր Մերձաւոր Արևելք» խմբագրականում ի միջի այլոց գրում է և հետևեալը.—

«Իրենց փոխադարձ շահերի հանդիպման կէտերի մասին Ռուսաստան և Անգլիա պէտք է մի ամբողջական համաձայնութեան գան՝ խաղաղութեան մեծ վեհաժողովի գումարումից առաջ, և գուցէ ոչ ոք աւելի յարմար է վարելու այդ բանակցութիւնները քան Լորդ Միլները, և մենք յոյս ունինք որ Բեդրոկրատում նա միտք ունի և խօսելու Մերձաւոր և Միջին Արևելքում Անգլօ-Ռուսական շահերի վերակարգադրման հարցերի մասին . . .»։ Պոլսի ճակատագիրը վճռուած լինելով ի նպաստ իրեն, Ռուսաստանը չի կարող ընծայել ոևէ առարկութիւն Պարսկաստանում Անգլօ-Ռուսական շահերի շրջանակների մի արդարադատ սահմանագծման վերաբերմամբ։ Նա պիտի ճանաչի նաև որ Միջագետքի վերաբերմամբ անգլիական պահանջները անհրաժեշտապէս չեն որոշում Ռուսաստանի ապագայ յարաբերութիւնները հանդէպ Հայաստանին, որի ազգաբնակութիւնը, թէև յենուած Ռուսական օգնութեան վրայ, ունի իր սեփական ազգային գոյութիւնն և որոշ էութիւնը ևայլն»։ Թերթը պահանջում է համաձայնել Մօտաւոր Ասիայի հարցերի շուրջը և նրանց մասին Գերմանիոյ և Աւստրօ Հունգարիոյ անպայման ընդունելութիւնը պահանջել ապագայ վեհաժողովում։

Ինչ որ էլ լինի Հայաստանի կամ Արաբիայի ճակատագիրը, դրանք այլևս չպիտի մնան Թիւրքական լծի տակ։

ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆ

Լոնդոն

# Գեղարուեստ

## ՀԱՅՐԵՆԻ ԴՌԱՆ

Նոյն առուի ափին,
Հին ճամբու վրայ,
Նոյն դռան շէմքին,
Որ դեռ կը մնայ,
Կանգնած եմ ահա ...

Գլխիկոր, վհատ,
Որբի պէս լռին,
Հայեացքով մ'անթարթ
Ծղազուրկ ուռին,
Կը նայէ կրկին։

Նախկին այգիում
Պատուհանիս մէջ,
Ուր առաջ ծիծղող
Գարունի պէս պերճ,
Կեանք մը կար անշէջ։

Ու շուրջս անձև
Հայրենի ջուր, հող,
— Տուներն չէն, շքեղ,
Հարազատ, շոյող
Երկինք, Երկրի հով,—
Անշմրժ, անհամբոյր ...
Որպէս գերեզման
Այժմ, մռայլ, տխուր,
Փուլեր է անձայն
— Անդարդ Այգեստան,—

Նախկին չէ ... չկան
Հովերը ծփուն,
Ուրախ երեկուան,
Կարկաչող առուն
Ու ճամբէք եռուն։

Նոյն առուի ափին,
Հին ճամբու վրայ,
Նոյն դռան շէմքին,
Որ ... դեռ կը մնայ,
— Կանգնած եմ ահա ...

Վան, 1917 Ռստանիկ Յովհաննիսեան

# Գաւառ

## ՊԷՏՔ Է ՊԱՏԵՀՈՒԹԻՒՆԸ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ

Նոր Բայազէտ

Նորագոյն կարգերու հաստատումը ժողովրդական լայն խանդավառութեան հետ յառաջ բերաւ նաև մեծ հետաքրքրութիւն դէպի ինքնագործունէութիւնը։

Վաղուց էր ինչ մեռած էր ժողովրդի մեծ ոգին և ամեն մի ազգային-հասարակական հաստատութիւն քաշքաշ յառաջ կը տանէր։

Գաւառը՝ կեդրոն հարստահարութեան և ճնշումի, ստրաժնիկի մտրակի տակ ընկճուած, գալավայի և պրիստաւի բիրտ բռունքէն ոտնահարուած, ինչպէս նաև զրկուած աշխատաւոր ձեռքերու սփոփիչ մխիթարանքէն՝ բնական էր որ ամենէն աւելի արձագանգ տալու և փարելու էր սրտովին Նոր կարգերուն։

Գաւառի զարթօնքի ոգևորութեան մեծ և խանդավառ րոպէն է այժմ, որ ոչ միայն պէտք է հետևի կառավարութեան կոչերուն և կարգադրութիւններուն, այլև մեծ եռանդով յառաջ պիտի նետուի դէպի իր ազգային գործունէութեան կազմակերպումը, որուն աւելի քան այսօր անհրաժեշտօրէն պէտք ունի։

Ո՞վ կարող է ուրանալ Կ. Հ. Բ. Ընկերութեան ցոյց տուած ծառայութիւնը դէպի հայ ազգը իր ընդհանուր առումով։

Մինչև այսօր Նոր-Բայազէտ ամենէն անհետաքրքիր և ժլատ վերաբերմունքն ցոյց տուած էր դէպի ազգային գործերն ու անցուդարձեր. այսօր սակայն մեծ ոգևորութեամբ ընդառաջեց այն ցանկութեան, որ րոպէն և տրամադրութիւնը ստեղծած էին։

Բար. Ընկեր. լիազօր պ Մ. Աստուածատուրեանի հրաւէրով տեղական ճիւղի վարչութեան ընտրութիւնը կատարուեցաւ մեծ եռանդով և ոգևորութեամբ։

Նոր վարչութեան աչալուրջ աշխատանքի շնորհիւ անդամագրուողները հետզհետէ կաւելնան և յոյս կայ կանանց եւ մասնակից ընել բարեգործական ճիւղի գործունէութեան։

Բաղդատական եզր մը տալու համար անցեալ երեք տարի-

ներու մէջ Նոր-Բայազէտ ունեցած է հազիւ 4 անդամ, իսկ այժմ անդամներու թիւը մօտ է 40-ի, որոնք բոլորն ալ կանխիկ վճարած են իրենց անդամավճարները։ Ժամանակ է օգտագործել ժողովրդի մէջ ստեղծուած գեր-հետաքրքրութիւնը։ Բարեգործական ճիւղերը պէտք է մեծ աշխատանք թափեն այդ ուղղութեամբ։

ՆՇԱՆ ՑԱԿՈԲԵԱՆ

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Մայիսի 24-ին կայացաւ Հ. կ. Կոմիտէի հերթական նիստը՝ նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետեւեալ զեկուցումներն ու որոշումները.

ա) Պ. Ս. Յարութիւնեանի զեկուցման համաձայն, որոշուեց Դիլիջանում հիմնել «մի բաժակ թէյ», որպիսի նպատակի համար որոշեցին յատկացնել 400 ռ.։

բ) Տրապիզոնից հայր Մելեանցը հեռագրել է, որ այնտեղի որբանոցի որբերի մի մասը տեղափոխել է Բաթում։

գ) պ. Նախագահի զեկուցման համաձայն, որոշուեց Խնուսի որբանոցը տեղափոխել Ջալալ Օղլի, ուր արդէն վարձուած է մի յարմար բնակարան. այնտեղ պէտք է փոխադրել նաև Թիֆլիսի Ծուլբնեան այգու որբանոցը։

դ) Ցարսկիէ-Կոլոդցից յայտնում են, որ տեղական հասարակութիւնը առհասարակ դէպի որբերը շատ սիրալիր վերաբերմունք է ցոյց տալիս, լինում են հրաւէրներ. այսպէս պ. Վարդան Օթարեանից շնորհակալութեամբ ստացուել է 310 ռ. յօգուտ որբերի, որ գոյացել է սիրողների ներկայացումից եայլն։

# Քրոնիկոն

Մայիսի 27-ին, Գայիանեան դպրոցի դահլիճում կայացաւ Հայ Գրողների Ընկ. ժողովը նախագահութեամբ Ստ. Լիսիցեանի։ Ժողովը մի քանի ուղղումներով հաստատեց յատուկ յանձնաժողովի կողմից փոփոխութեան ենթարկուած կանոնագրութիւնը, որից յետոյ անցաւ վարչութեան ընտրութեան։ Գաղտնի քուէարկութեամբ վարչ. անդամներ ընտրուեցին՝ Յով. Թումանեան, Ն. Աղբալեան, տիկ. Զ. Եսայեան, Դ. Դեմիրճեան, Նիկ. Սարգսեան, Ան. Աբովեան (գանձապահ), Ստ. Կանայեան և Վ. Տէր-Գէորգեան։ Կանոնագրութեան փոփոխութեամբ թէև պարձեալ անուանուելու է «Հայ Գրողների Կովկասեան ընկ.», բայց իր գործունէութիւնը տարածելու է ամենուրեք։

— Մայիսի 28-ին Արտիստական ընկ. շէնքում տեղի ունեցաւ Հայ. Արուեստ. Միութ. տարեկան ընդհ. ժողովը՝ ընկերութեան գործունէութեան և հաշիւների մասին զեկուցում լսելու, կանոնագրութեան մի քանի կէտերը փոխելու և լրացուցիչ ընտրութիւններ կատարելու համար։

— Կազմուած է Կովկասեան ճակատի փախստականական գործերի խորհուրդ բաղկացած 23 հոգուց։ Խորհուրդը իր միջից ընտրել է մի գործադիր մարմին բաղկացած 4 հոգուց՝ մի հայ, մի ռուս, մի վրացի և մի թուրք, որոնք են՝ պ. Ս. Յարութիւնեանց, Խասրով Բէգ-Սուլթանով, Միխայէլ Վախտ, Մաչաբելի, Իվան Ա. Իգնատև և չորս փոխանորդներ. — Ա. Սահակեանց, Ա. Պիպինով, Մ. Կախիանի և Մ. Նեպրինցև։

— Անդրկովկասեան առանձին կոմիտէն որոշել է բոլոր քաղաքներում և գիւղաքաղաքներում մտցնել քաղաքային իրաւակարգ։

— Քաղաքային Դումայի ընտրութիւնների համար քաղաքացիների ցուցակագրութիւնը վերջացել է։ Յայտնուել է, որ ընտրութիւններին մասնակցելու իրաւունք ունեցող քաղաքացիների թիւը 135,000 է, իսկ զինուորականներինը 70,000։

— Իրկուտսկի հայկական կոմիտէն բաց է արել գրադարան-ընթերցարան և մի գրութեամբ խնդրում է «Համբաւաբեր» ուղարկել. Թերթիս խմբագրութիւնը որոշել է մի օրինակ տրամադրել Իրկուտսկիի գրադարան-ընթերցարանին։

— Ներքին գործերի մինիստրութեան կից յատուկ յանձնաժողովը որոշել է Թիֆլիսի պոլիտեխնիկումի շէնքը կառուցել տեղական միջոցներով, իսկ կահաւորման և կազմակերպման համար պետական միջոցներից միանուագ յատկացնել 1,175,700 ռ.։ Պոլիտեխնիկումի ուսումն սկսուելու է առաջիկայ աշնանը մասնաւոր շէնքում. դասատուները լինելու են տեղական գիտնականները մի քանի պրոֆէսորների հետ. ընդունուելու են ուսանող-ուսանողուհիներ։ Դասատուների մէջ լինելու են նաև կանայք։

— Դերբենդի հայկական ճիւղը բաց է արել գրադարան-ընթերցարան։ Կ. Հ. Բ. Խորհուրդն այդ գրադարանին ուղարկել է նուէր 130 կտոր հայերէն գրքեր։

— Գանձակ է մեկնել Միք. Աթաբէկեանը, որ Անդրկովկասի առանձին կոմիտէի լիազօրութեամբ վարելու է Նահանգի գործերը։ Նրան յանձնարարուած է կազմակերպել տեղական իշխանութիւնները։

— Մայիս ամսուայ ընթացքում Կ. Հ. Բ. Ընկ. կենդրոնական գրադարանից տրուած է կարդալու համար 4985 գիրք, որից 3351 հայերէն և 1634 ռուսերէն։

— Թիֆլիսի քաղ. գործադիր կոմիտէն առաջարկել է միլիցիայի պետին՝ հեռացնել իր դիւանատան բոլոր հին ծառայողներին։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց Արեւմտեան ճակատում պատերազմական նշանակալից գործողութիւններ տեղի չեն ունեցել։

Ֆրանս-Անգլիական ճակատում ուժգին կռիւներ են տեղի ունենում։ Նեօշապէլի, Արմանտիէրի և Իպրի շրջաններում հակառակորդի յարձակումները ապարդիւն են անցել։

Բրիտանացիք շարունակ առաջանում են, նորանոր յաջողութիւններ ձեռք բերելով։ Սուէզի շրջանում նրանք վերցրին 117 գերի և 3 գնդացիր։ Շաբաթուայ ընթացքում անգլիացիները ձեռք են ձգել մօտ 5000 գերմանացի և ընդլայնել պատերազմական ճակատը։

———

Հեղինակաւոր աղբիւրներից յայտնում է, որ արեւելեան ճակատի վրայ թշնամին ունի 146 դիվիզիա զօրք, 12,000 գնդացիրներով և մօտ 7500 թնդանօթներով սպառազինուած։

Արեւմտեան ռազմաճակատում թշնամին ունի 115 դիվիզիա հետեւակ զօրք։

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Խնդրում ենք «Համբաւաբեր»ի յառաջիկայ համարում հրատարակել հետեւեալը.

«Կ. Հ. Բ. Ընկ. Սոչիի ճիւղի վարչութիւնը իր խորին շնորհակալութիւնն է յայտնում պ. Գաբրիէլ Երեմեանին, որ բարեհաճեց քաղաքի կենտրոնում մի յարմար շէնք յատկացնել Ընկերութեանս նորաբաց գրադարան-ընթերցարանի համար»։

Ի դիմաց Կ. Հ. Բ. Ընկ. Սոչիի ճիւղի վարչութ.
փ. Նախագահ՝ Արամ Ցակոբեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՑԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1